իրենց ամենամեծ պաշտպաններն են ։

Ներսը պաշարողները Թուրք ռաւիկան - զինուորներն էին, իսկ պաշարողներն ալ զինեալ ռազմիկաններ, որոնք կիներու եւ մանուկներու համար պահուած էին ։

Ցարձակողները ուժ առին միջազգային յանձնաժողովի նախագահին իրենց իրաւունք տալով խօսքերէն եւ ռաւիկան զօրքի հրամանատարին պաշարեալներուն ուղղած «մի կրակէք» հրամանէն, եւ զարհուրելի յիշոցներ արձակելով ու պատուհաններուն վրայ պարպուող հրացանի ձայներուն մէջէն չէնքին վրայ խուժեցին ։

Այն ատեն ներսինները կրակել սկսան ։ Ցարձակողները իրենց առջեւէն կիները եւ մանուկները կը քշէին, այնպէս որ երկու կիներ ու տղայ մը վիրաւորուեցան եւ ամբոխն ալ ցրուեցաւ ։ Կառավարչատան պարտէզին մէջ նետուած քարերէն քարակոյտ մը գոյացաւ ։ Կացութիւնը նորէն լարուած է ։

## 50,000,000 Չինացիներ անպատսպար

Չինաստանէն հասած վերջին լուրերը կը հաստատեն թէ անհուն համեմատութիւններ առած է Դեղին գետին յորդումը ։ Ճափոնական հրամանատարութիւնն ալ չափազանց վտանգաւոր կը նկատէ կացութիւնը եւ ամբարտակները բոլորովին անկարող են կասեցնելու հեղեղը, որ բռնած է զինուորական գործողութեանց ամբողջ շրջանը ։ Միւս կողմէ, չինական թնդանօթները իրենց կրակին տակ պահելով քանդուած թումբերը, թոյլ չեն տար որ Ճափոնցիները նորոգեն զանոնք ։

Ամէն կողմէ անհամար փախստականներ իրար խառնուած են եւ ի զուր ապահով վայրեր կը փնտռեն ։ Ջուրերուն տակ թաղուած է 4000 մղոն տարածութիւն, 100.000 Չինացիներ պաշարուած են ջուրերէն, անօթի ծարաւ, իսկ ուրիշ 700.000 հոգի կը թափառին ջուրերուն մէջ կամ լաստերու վրայ ։ Եթէ ողողումները անմիջապէս չդադրին կամ թումբեր չշինուին, կը կարծուի թէ 50.000.000 հոգի անպատսպար պիտի մնան մինչեւ մէկ ամիս ։

## Սպանիական պատերազմը կը սաստկանայ

Զօր. Ֆրանքոյի շրջանակներէն կը հաղորդեն թէ ազգայնական բանակը յարձակողականի ձեռնարկած է երեք ճակատներու վրայ ։ Կատաղի կռիւներ կը մղուին այդ երեք ճակատներուն վրայ ։ Հանրապետականները կ՚ըսեն թէ ապստամբները պարտութեան մատնուեցան, բայց այս վերջինները կը հերքեն ։ Ամէն պարագայի մէջ, կռիւները սաստկացած են ։ Ազգայնականները իրենց ամբողջ ուժը թափած են Սակուեթայի վրայ, եւ կը ճգնին գրաւել զայն, որպէսզի հանրապետականները չկարենան ամրացնել այդ մետաղագործական կեդրոնը եւ Վալենցիան ։ Հանրապետականները ուժգնօրէն կը դիմադրեն ։

Ամէն կողմէ փախստականներ կը հասնին Վալենցիա, որուն բնակչութիւնը քառապատկուած է ։ Վերջերս 40.000 հոգի եւս հասան Քասթէլլոնի նահանգէն, ասպատակելով ուտեստի տագնապը ։ Հիւանդանոցներն ալ խճողուած են ։

Ազգայնականները կը շարունակեն անխնայ ռմբակոծել Վալենցիան եւ Պարսելոնան ։ Զօր. Ֆրանքօ բացարձակ անձնատուութիւն կը պահանջէ, այլապէս կռիւները պիտի շարունակուին անողորմաբար ։

*** Հանրապետական Սպանիոյ վարչապետը ձայնասփիւռ ճառ մը խօսելով, յայտարարեց.— Զորս ամիս առաջ ռազմանիւթի տագնապի մը առջեւ կը գտնուէինք, իբրեւ հետեւանք ոչ - միջամտութեան քաղաքականութեան ։ Այժմ անցած է տագնապը, շնորհիւ մեր ճարտարագործութեանց գերարտադրութեան ։ Մեր բանակը բաւականաչափ սպառազինուած է ։ Մնաց որ, մեր զինուորները հարիւր անգամ ապացուցին թէ թշնամին պարտութեան մատնելու համար անհրաժեշտ չէ ռազմանիւթի հաւասարութիւնը ։ Մեր շահելիքը կ՚արժէ ամէն զոհողութիւն ։ Մենք կը կռուինք անոր համար որ Սպանիան Սպանիացիներուն մնայ, եւ պիտի յաղթենք ։ Երբ հարցը, հայրենիքի մասին է, կա՛մ կը յաղթեն եւ կամ կ՚իյնան ։ Մենք պիտի յաղթենք ։ Սպանիա չուզեր ոչ լուծի տակ իյնալ, ոչ ալ հովանաւորեալ երկրի մը դառնալ »։

## Անգլիա եւ Իտալիա կը վիճին

Իտալական կառավարութիւնը առաջարկեց ձեռնարկել անգլօ-իտալական համաձայնութեան գործադրութեան, յանձն առնելով որ Սպանիոյ իտալացի կամաւորները առ այժմ չմասնակցին կռիւներուն ։ Անգլիական կառավարութիւնը մերժեց առաջարկը, մինչեւ որ լուծուի օտար կամաւորներու քաշման խնդիրը ։ Լոնտոնի իտալական դեսպանը այս առթիւ տեսակցութիւն մը ունեցաւ Անգլիոյ վարչապետին հետ ։ Կ՚ըսուի թէ Պ. Չէմպըրլէն զաղտնապէս խնդրած է աշխատաւորականներէն եւ միւս ընդդիմադիրներէն որ նեղացուցիչ հարցումներ չուղղեն կառավարութեան, մինչեւ ոչ - միջամտութեան յանձնաժողովին գումարումը ։

Եթէ Սպանիոյ կամաւորներու խնդիրը դիւրութեամբ կարգադրուի, անգլիական կառավարութիւնը միջոցներ ձեռք պիտի առնէ, իրականացնելու համար Ֆրանքօ-իտալական հաշտութիւնը, առանց որու անգլօ-իտալական համաձայնութիւնը թուղթի վրայ պիտի մնայ ։ Այս առաջադրութեամբ, Անգլիոյ Թագաւորին այցելութեան առթիւ Փարիզ պիտի գայ նաեւ արտաքին նախարարը, խորհրդակցելու համար Ֆրանսայի վարչապետին եւ արտաքին նախարարին հետ ։

## ՁԱՆԱԶԱՆԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՖԱՂԱՆԻՍՏԱՆԻ ԵՒ ՌՈՒՄԱՆԻՈՅ թագաւորը տեսակցութիւն մը ունեցան Վոսփորի մէջ, «Սավարոնա» զբօսանաւին մէջ որ վերջերս գնուեցաւ Թուրքիոյ հանրապետութեան նախագահին համար ։

ՀԱՄԱՑՆԱՎԱՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ընդհ. քարտուղարը, Պ. Մորիս Թորէզ, ճառ մը խօսելով, քննադատեց ընկերվարական կուսակցութեան դերը՝ ժողովրդական ճակատի գործունէութեան մէջ ։ Համայնավարները կը պահանջեն ամբողջովին գործադրել ժողովրդական ճակատին ծրագիրը, բանալ Սպանիոյ սահմանագլուխը եւն. ։

ՊԵՏԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐՈՒ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ, որ 800.000 անդամ կը ներկայացնէ, ժողով գումարելով սպառնաց ընդհ. գործադուլ հռչակել ամառնային արձակուրդէն վերջ, քանի որ կառավարութիւնը որոշեց թոշակի յաւելումները յետաձգել մինչեւ 1939 . Գործադուլը պիտի ըլլայ «նստուկ»,հետեւողութեամբ 1936ի բանուորական գործադուլներուն ։ Միութեան ընդհ. քարտուղարը յօդուածով մը կը յորդորէ որ եւ է ձեռնարկ չկատարել մինչեւ հոկտեմբեր, չխանգարելու համար Անգլիոյ թագաւորին այցելութիւնը ։

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ երեսփ. ժողովին մէջ, երբ կը քննուէր պահածոյին արուեստի պատասխանը, գրեթէ բոլոր ընդդիմադիր երեսփոխանները առին քալեցին ։ Այն երեսփոխանը որ կարդացած էր ընդդիմադիրներուն բողոքագիրը, արտաքսուեցաւ երեք նիստի համար ։

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԻ ժողովրդական լեզուով հրատարակութեան 400ամեակը տօնուեցաւ Անգլիոյ մէջ, մեծ հանդիսութեամբ ։

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ պահեստինները, որոնք զէնքի տակ առնուած էին, արձակուեցան շաբաթ օր, գոհացում տալու համար Գերմանիոյ, որ սակայն գոհ չերեւար ։— Գաշտօնական բանակցութիւնները կը սկսին այս շաբթու ։



### ԽՆՋՈՅՔ

Իսի Լէ Մուլինոյի Հայ Երիտասարդաց Միութեան խնջոյքը տեղի պիտի ունենայ Յունիս 26ին, Կիրակի ժամը 3էն մինչեւ կէս գիշեր ։

ԿԸ ԽՕՍԻ Պ. Ն. ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ

Կը մասնակցի ԵՓՐԱՏ նուագախումբը ։ Մուտք 6 Ֆր. ։

Միութեան վիճակահանութիւնը կը բացուի նոյն օրը ։
























Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Demesme — PARIS (13)

